# Ջ. ԳԱՐԻԲԱԼԴՈՒ, ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ «ՊՈՊՈՔԻ» ՄԱՍԻՆ

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Ջոկավորության տանը որոշվեց, որ Վաղարշակը (այսինքն՝ ես) մեկնելու է Ծաղկաձոր՝ պիոներական ճամբար։ Ցերեկը երկաթգծի կամուրջի տակ իմ ճամբար գնալու հարցը դրվեց քննարկման։ Թաթիկը (նրա իսկական անունը Թաթոս է), ինչպես միշտ, ղեկավարում էր մեր հավաքը։ Դերասիմը, Հենրիկ Վաղոն ու Հայկազը չկային։ Միկիչն ու Սուրիկը ընդամենը տասը տարեկան էին և զրկված ձայնի իրավունքից։ Թաթիկի հնարած օրենքով խմբի իսկական անդամներ կարող էին լինել միայն այն տղաները, որոնց տասներկու տարին արդեն լրացել էր։ Դուրս էր գալիս, որ փաստորեն ժողովն օրինական չէր։ Ուրիշ ժամանակ Թաթիկը, որ բերանացի գիտեր ժողով անելու բոլոր կանոնները, երևի կասեր.

— Ձեզա՞մ, օրինական չի, խմբի երկու երրորդը չկա։

Բայց այսօր նրա ղեկավարելու ցանկությունն այնքան մեծ էր, որ երկու երրորդի մասին չհիշեց։ Ինձ, Միկիչին ու Սուրիկին նստեցրեց կամուրջի տակ, ինքը կանգնեց մեր առջև, Միկիչին կարգադրեց, որ մտքում արձանագրություն գրի, և ճառ ասաց իմ ծնողների որոշման, ազատության ու Ջ. («Ջ» նշանակում է Ջուզեպպե) Գարիբալդու մասին։

— Ազատությունը,— դանդաղ ու հատ-հատ ասում էր նա (այդպես դանդաղ ու հատ-հատ էր ասում, որ Միկիչը հասցնի մտքում գրել)։— Ազատությունը բնության ամենամեծ բարիքն է։ Այդպես է ասել Դոն Կիխոտը իր բաջ զինակիր Սանչո Պանսային, պա՞րզ է։

Պարզ էր։ Բայց ես գիտեի, որ բնության բարիքները մրգերն են, խաղողը, տանձը, կեռասը.... Ազատությունն ինչ-որ բանով տարբերվում էր կեռասից և ավելի շատ նման էր ամառային արձակուրդներին։ Սակայն մեր խմբում ոչ ոք Թաթիկի հետ չէր վիճում. ախր նա մեր մեջ ամենագիտունն ու ամենահնարագետն էր։ Բացի դրանից, ես չգիտեի, թե ով է այդ ընկեր Դոն Կիխոտը և նրա բաջ զինակիր Սանչո Պանսան, Միկիչն ու Սուրիկն էլ չգիտեին։ Այն ժամանակ մենք դեռ Սերվանտեսի գիրքը չէինք կարդացել և Միկիչի

համար հավանաբար շատ դժվար էր մտքում գըրվող արձանագրության մեջ տեղավորել այդ երկու անծանոթ ընկերների անուն-ազգանունները: Դրա համար էլ Միկիչը դեռ կիսաձայն կրկնում էր. «Դոն...Մանչո... Դոն... Պանաս...» Այնինչ Թաթիկն արդեն անցել էր իր ճառի երկրորդ մասին.

— Իսկ ի՞նչ է արել Ջ., այսինքն՝ Ջուզեպպե Գարիբալդին:

Մենք գիտեինք, որ նրա հարցը մեզ չէր ուղղված, ինքը պիտի պատասխաներ: Այդպես էր նրա սովորությունը: Ճառ ասելիս ինքն իրեն հարցեր էր տալիս ու այնպես էր պատասխանում, որ կարծես տաք-տաք վիճում էր մեկի հետ:

— Ջ., այսինքն՝ Ջուզեպպե Գարիբալդին, իր ամբողջ կյանքում պայքարել է ազատության համար:

Թաթիկն ինձ նայեց: Ես ծպտուն չէի հանել, թեև, ճիշտն ասած, չգիտեի նաև, թե ով է Ջ. Գարիբալդին. Բուդյոննուն ճանաչում էի, Չապաևին, Պարխոմենկոյին, Գային, Շչորսին... Բայց իմ կարդացած գրքերում Ջ. Գարիբալդու անունը չկար: Սակայն ես ծպտուն չէի հանել:

Թաթիկը սիրում էր, որ իր ճառի ժամանակ մենք բոլորս լռեինք: Նա դրան ասում էր «երկաթե կարգապահություն»:

— Այո՛,— բարկացած ասաց նա,— և մի՛ վիճիր...

Հետո նա անցավ ճամբարային կյանքի նկարագրությանը: Ասենք, ոչ թե նկարագրում, այլ համեմատում էր ազատության հետ, բնության բարիքների, ինչպես մի ժամանակ արել էր Դոն Կիխոտը:

— Ի՞նչ մի լավ բան կա, ասացեք խնդրեմ: Առավոտը դեռ լույսը չբացված շեփորը՝ տու՜, տու՜, տու՜...Քունդ այնպես է տանում, որ էլ չասած, բայց համարձակվիր քնել, ո՞նց չէ...Պիտի վեր կենաս բոլորի հետ: Նորից տու՜, տու՜, տու՜... Սրբիչդ առ, բոլորի հետ գնա գետափ լվացվելու, ամեն օր լվացվիր, կարծես գետաբար ես կամ լվացքի տաշտակ...Գոնե թողնեին մենակ գնալ: Ոչ, բարեհաճիր շարք կանգնել: Շարքով գնա լվացվելու, շարքով վերադարձիր, շարքով ձեռքերի ու ոտքերի շարժումներ արա: Դրան էլ «լիցքային վարժություններ» են ասում: Մեկ է, արա այդ անիծյալ վարժությունները, ո՞վ է ցանկությունդ հարցնում: Փորձիր փախչել, ո՞նց չէ, երեկոյան տողանի ժամանակ ով ասես վրադ կխոսի, ջոկատի խորհրդի նախագահից մինչև ճամբարի պետը... Եվ այլն...



Թաթիկը ճառ էր ասում, ես, Միկիչն ու Սուրիկը աստիճանաբար համոզվում էինք, որ ճամբարն իսկապես սարսափելի բան է:

— Շարքով, շեփորով, շարքով, շեփորով... Շեփորով գնում ես ճաշի, շեփորով ընթրիք ես անում, շեփորով պառկում ես քնելու, եթե նույնիսկ քունդ էլ չի տանում... Մի՞թե սա ազատություն է, քեզ եմ հարցնում:

Եվ, իհարկե, ինքն էլ պատասխանեց.

— Ո՛չ, սա ազատություն չէ՛: Այդ բանը հասկացել է դեռևս Հեկլբերի Ֆիննը, թեև, ինչպես հավանաբար հիշում եք, ապրում էր ոչ թե մեզ մոտ, այլ բուրժուական երկրում:

Միկիչն ու Սուրիկը չգիտեմ, բայց ես Հեկ Ֆիննի մասին գրած գիրքը կարդացել էի և մտքումս խոստովանեցի, որ Հեկ Ֆիննը դրա նման մի բան մտածում էր...

Մի խոսքով, թեև խմբի ժողովն «օրինական չէր», բայց այդտեղ իմ բախտը վճռվեց: Թաթիկը ո՛չ ինձ հարցրեց, ո՛չ էլ Միկիչին ու Սուրիկին, այլ ամբողջ խմբի անունից ասաց.

— Խումբը միաձայն որոշում է, որ ընկեր Վաղարշակը պիոներական ճամբար չգնա:

* * *

Այսպես, «խումբը միաձայն որոշեց»: Ես էլ արդեն համոզվել էի, որ ազատությունը, որի համար ամբողջ կյանքում պայքարել է հարգելի ընկեր Ջ. Գարիբալդին, չի կարելի սպանել (սրանք էլ Թաթիկի բառերն էին):

Բայց իմ ծնողները Թաթիկին չէին ենթարկվում: Նրանք, այնուամենայնիվ, ինձ ավտոբուս նստեցրին և բոլորի հետ ուղարկեցին Ծաղկաձոր:

Առաջին օրը ես համոզվեցի, որ Թաթիկն իրավացի է: Քունս տանում էր, երբ շեփորը «վեր կաց» հնչեց: Ես ստիպված վեր կացա ու շարք կանգնեցի: Հետո շարքով գնացինք գետում լողանալու: Ես լողանալու ցանկություն չունեի, բայց ջոկատավարը կարգադրեց, ու ես էլ բոլորի հետ մտա գետը... Հետո, ճիշտ էր ասում Թաթիկը, շեփոր, շարք, շեփոր, շարք...



Բայց կամաց-կամաց այդ բոլորն սկսեց դուր գալ... Նոր ընկերնե՞ր, անտառ, խարույկ, ծիծաղ, վազք, նույնիսկ առավոտյան լողանալը հաճելի դարձավ, թեև ես ոչ գետաքալ՝ էի, ոչ էլ լվացքի տաշտակ, ինչպես ասում էր Թաթիկը: Ես մոռացա Թաթիկի ճառը ազատության և հարգելի ընկեր Ջ. Գարիբալդու մասին, ավելի ճիշտ գլխի ընկա, որ Ջ. Գարիբալդու պայքարը ճամբարի ու շիփորի հետ կապ չունի...

Բայց մի անակնկալ դեպք, ինչպես նույն ինքը Թաթիկը կասեր, «փոխեց իրերի ընթացքը»:

Մի առավոտ մեր ճամբարի հարևան բացատում ես տեսա Միկիչին, նրա հայրիկին, մայրիկին և երկու անծանոթների: Նրանք խարույկ էին անում խորովածի համար: Հենց այդտեղ էլ կանգնած էր մարդատար մեքենան: Պարզ էր, նրանք մեկ օրով եկել էին հանգստանալու: Ես վազեցի Միկիչի ու նրա ծնողների մոտ: Միկիչի մայրիկը համբուրեց ինձ, հայրիկը շոյեց խուզած գլուխս: Իսկ Միկիչն ինձ ձեռք չտվեց, տարավ խարույկից հեռու ու ցածրաձայն ասաց.

— Դու չկատարեցիր խմբի որոշումը, երեկոյան «սև նշան» կստանաս:

Գնաց: Ես էլ կոտրված գնացի ճամբար:

Երեկոյան մենակ նստած էի մեր ճամբարի բացատի եզրին, մի ծառի տակ: Հանկարծ գլխիս մի ամուր հարված զգացի, թղթով փաթաթված փոքրիկ քարն ընկավ ոտքերիս առաջ: Գլխիս մի ահագին «պոպոք» գոյացավ, աչքերս արցունքոտվեցին: Բայց ես հասկացա, որ դա հենց «սև նշանն» էր, որ հավանաբար ճեղապարսատիկից արձակել էր Միկիչը: Ես քարը նետեցի, բայց արի ճմրթված թուղթն ու կարդացի.

«Քաղաքացի Վաղարշակը չկատարեց հրամանատարության որոշումը: Նա արժանի է պատժի, բայց «Ազատություն» խումբը նրան վերջին հնարավորությունն է տալիս հանցանքը քավելու: Քաղաքացի Վաղարշակը անհապաղ պետք է փախչի պիոներական ճամբարից: Հակառակ դեպքում «Ազատություն» խումբը նրան կհամարի դավաճան:

Ջ. Գ. Հ. (ես գիտեի. դա նշանակում էր՝ զորքերի գլխավոր հրամանատար) բանակի գեներալ Թ.»:

* * *

Առավոտյան ես գաղտնի ծլկեցի ճամբարից: Քաղաք տանող ավտոբուսի մեջ գլուխս սաստիկ ցավում էր, գագաթիս տնկվել էր «սև նշանի» առաջացրած «պոպոքը»: Բայց ես մտածում էի Դոն Կիխոտի, Ջ. Գարիբալդու մասին և այն մասին, որ բանակի գեներալ Թ.-ն, այնուամենայնիվ, ինձ սիրում է, եթե հնարավորություն է տալիս կրկին խումբ վերադառնալու:

Քաղաքում ես ամեն ինչի դիմացա. և՛ անտանելի շոգին, և՛ ծնողներիս նախատինքին, և՛ այն բանին, որ հայրիկից թաքուն մայրիկը մի լավ հասցրեց: Միայն մի բանի չդիմացա: Թաթիկը պիոներական ճամբար էր մեկնել, այն էլ հենց նույն օրը, երբ ես փախել էի ճամբարից:

Օգոստոսի վերջին նա վերադարձավ: Ուրախ էր, առողջ, բրոնզագույն և դեռ ճամբարից Միկիչին նամակ էր գրել, որտեղ այն միտքն էր հայտնում, թե իսկական ազատությունը բնության՝ գրկում է և ոչ թե քաղաքի փոշոտ փողոցներում...

Հենց նրա վերադարձի օրը ես բռնեցի ու մի լավ դնքսեցի Ջ. Գ. Հ. բանակի գեներալ Թ.-ին:

Հիմա ինչ ուզում եք ասեք...

Նկ. ՎԱԶԻ ԹԵՎԱՆՑԱՆԻ



# ՇԵԿԼԻԿ ԴՈՆԱՐԱՅԻ ՀԵՔԻԱԹԸ

*ՇՈՂԻԿ ՄԱՑՅԱՆ*

Դոնարա մորաքույրը մի ջահել, գեղեցիկ կին է, շեկլիկ, աչքերը կապույտ: Ամառը հագնում է բաց կանաչ շրջազգեստ և սպիտակ կոշիկ: Ծղոտե դեղին պայուսակ ունի, որի մեջ Սուրիկի և Լյովիկի համար նվերներ է պահում: Դոնարա մորաքույրը ինքը երեխաներ չունի, բայց շատ է սիրում երեխաներին և միշտ ասում է.

— Սուրիկ-Լյովիկ, դուք իմ բալիկներն եք, լա՞վ:

Սուրիկն ու Լյովիկը ասում են.

— Լավ:

Ասում են ու նայում ծղոտե պայուսակին: Նվերներ են սպասում:

Մի անգամ Դոնարա մորաքույրը եկավ ճաշին:

Մայրիկը ամառվա տոլմա էր պատրաստել: Մի աման Սուրիկի առջևն էր դրել, մի աման՝ Լյովիկի: Սեղանին թարմ կանաչի կար, թարմ լավաշ ու մատնաքաշ: Դեղձ ու խաղող կար: Էլ ի՞նչ կար: Հա, պանիր, պոմիդոր ու վարունգ: Էլ ի՞նչ կար: Էլ բան չկար:

Դոնարա մորաքույրը ուրախ, սիրուն, ներս եկավ, պաչեց Սուրիկի աջ թուշը, Լյովիկի ձախ թուշը և ուզում էր ծղոտե պայուսակից նվերներ հանել, երբ մայրիկն ասաց.

— Դոնա՛րա, սրանց ոչինչ չտաս:

Դոնարա մորաքույրը նկատեց, որ մայրիկը տխուր է: Նայեց Սուրիկին ու Լյովիկին, տեսավ՝ նրանք էլ տխուր են: Նայում են իրենց ճաշի ափսեներին և քիչ է մնում լաց լինեն:

— Այս ի՞նչ է պատահել,— վախեցավ Դոնարա մորաքույրը:

— Սրանց հարցրու,— բարկացած ասաց մայրիկը և հեռացավ դեպի լուսամուտը:

Սուրիկը մեղավոր նայեց մայրիկի ետևից ու լռեց:

Լյովիկն ասաց.

— Մենք ուտել չենք ուզում:

Սուրիկն ասաց.

— Ախորժակ չունենք:

Լյովիկն ասաց.

— Մենք զզվում ենք:

— Ինչի՞ց եք զզվում, ա՛յ շան լակոտներ,— բարկացավ Դոնարա մորաքույրը:

— Ճաշից, պոմիդորից, խաղողից, դեղձից...

— Ի՞նչ:

Եվ հանկարծ Դոնարա մորաքույրը սկսեց ծիծաղել: Դոնարա մորաքույրը շատ լավ է ծիծաղում. բարձր, զնգուն, ալիք-ալիք, այնպես, որ սկսում են ծիծաղել սենյակի իրերը, ծիծաղում է մայրիկը, ծիծաղում են Սուրիկն ու Լյովիկը:

Դոնարա մորաքույրը անսպասելի էլ լռջացավ և ասաց մայրիկին.

— Սեղանից ամեն ինչ հավաքիր: Հացը տար, ճաշը տար, դեղձն ու խաղողը տար: Թող սեղանին ոչ մի բան չմնա:

Մայրիկը դժգոհ ասաց.

— Ո՛չ, նրանք պետք է ճաշեն:

— Դե, խնդրում եմ: Այսօր թող չճաշեն, վաղն էլ չճաշեն, մյուս օրն էլ: Թող բոլորովին, ոչ մի օր չըճաշեն:

Երբ Սուրիկն ու Լյովիկն են խնդրում չճաշել, մայրիկը չի զիջում, բայց Դոնարա մորաքույրը այնպե՛ս խնդրելով ասաց «խնդրում եմ», որ մայրիկը լուռ, սեղանից հավաքեց ամեն բան ու տարավ:

— Դե հիմա,— ասաց Դոնարա մորաքույրը և Սուրիկին ու Լյովիկին քաշեց իր մոտ,— նստեք իմ կողքին, ձեզ պիտի հեքիաթ պատմեմ:



Լինում է մի փոքրիկ, շեկլիկ աղջիկ, անունը՝ Դոնարա:

— Դո՞ւ, Դոնա՛րա մորաքույր:

— Հա՛, ե՛ս: Էս փոքրիկ, շեկլիկ աղջիկը ո՛չ մայրիկ է ունենում, ո՛չ հայրիկ, դրա համար էլ ապրում է մանկատանը: Այդ վաղուց, շա՜տ վաղուց էր: Այն ժամա-



ճակ պատերազմ էր ու սով էր:

— Սովն ի՞նչ է, շեկլի՛կ Դոնարա:

— Սո՞վը... սո՞վը...

Դոնարա մորաքույրը հուզվեց, շփոթվեց և հանկարծ լաց եղավ:

— Դոն... Դոն... Շեկլիկ Դոնարա, լաց մի՛ լինի: Մենք էլ չենք հարցնի՝ սովն ինչ է: Սովն ի՞նչ է, Դո՛ն:

— Սո՞վը... Սովը շատ վատ բան է: Այն, որ քաղցած ես լինում և ուտելու ոչինչ չի լինում: Պատերազմի ժամանակ բոլորն էլ քաղցած էին. և՛ ես, և՛ մայրիկը, և՛ Շողիկ տատիկը և՛ Ամալյա տատիկը, և՛ Ռուբիկ քեռին:

Մեր մանկատանը մի տղա կար, անունը՝ Սերոբ: Այդ Սերոբը սովի չէր դիմանում: Ու երբ շատ էր սովում, քունը չէր տանում: Դրա համար էլ իր բաժին հացը կիսում էր,կեսը ճաշին ուտում, մյուս կեսը դնում բարձի տակ, որ գիշերն ուտի:

Բայց մի օր վատ բան պատահեց:

Քնելուց առաջ Սերոբը ուզում էր հացը հանել, ուտել, տեսավ՝ հացը չկա:

— Վա՛յ, հացս... գողացել են,— գոռաց նա և ընկնելով մահճակալին, սկսեց լաց լինել:

Մենք իսկույն հավաքվեցինք Սերոբի շուրջը և ընկնեցինք գուշակել, թե ով կարող էր հացը գողանալ:

Բայց հացը մատիտ չի, որ փնտրես՝ գտնես: Մի բրդուճ հաց էր, կերել էին ու... վերջ:

Մնում էր միայն, որ գողացողն ասեր, նա էլ չէր ասում, ամաչում էր:

— Եկեք նայենք իրար աչքերի մեջ,— առաջարկեց Սուսանը,— գողացողի աչքերից կերևա:

Նստեցինք մահճակալներին և սկսեցինք նայել իրար աչքերի մեջ: Բայց ոչինչ չհասկացանք:

Իսկ Սերոբը շրջվել էր պատի կողմը և լալիս էր:

Շատ մեղք էր Սերոբը: Շատ քաղցած էր Սերոբը:

Սուսանը էլի չդիմացավ, ասաց.

— Երեխանե՛ր, եկեք վաղը նախաճաշին մեր բոլորի հացի կեսը տանք Սերոբին: Լաց մի՛ լինի, Սերո՛բ: Վաղը դու շա՛տ-շատ հաց կուտես: Մի մեծ աման հաց: Էնքա՜ն կուտես, էնքա՜ն կուտես: Լաց մի՛ լինի, Սերո՛բ:

Առավոտյան, երբ նախաճաշը բաժանեցին, բոլորս կիսեցինք մեր հացի կտորները, շարեցինք մի ամանի մեջ ու դրինք Սերոբի առաջ:

— Սերո՛բ, կե՛ր:

— Բա դո՞ւք:

— Բան չկա՛,— ասաց Արփիկը,— դու մի անգամ կեր կշտացիր:

Սերոբը շատ էր սոված: Կերավ մի կտոր, երկու կտոր, երրորդը բերանը տանելիս՝ ձեռքը հանկարծակի ետ քաշեց, հացը դրեց սեղանին ու սկսեց երեկվանից ավելի դառը լալ:

— Չեմ ուզում,— փղձկաց նա:

— Ինչո՞ւ, Սերո՛բ, կշտացա՞ր:

— Չէ՛, սոված եմ:

— Դե կե՛ր:

— Չեմ ուզում: Դուք էլ եք սոված:

— Ոչինչ, Սերո՛բ, կե՛ր:

Բայց Սերոբը չկերավ: Արտասուքը սրբեց, վեր կացավ, մնացած հացը փաթաթեց թղթի մեջ ու ճաշարանից դուրս եկավ:

«Երևի ամաչում է մեզ մոտ ուտել»,— մտածեցինք մենք:



ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Երեկոյան, երբ պատրաստվում էինք քնելու, Սերոբը կանչեց Սուսանին, բարձի տակից հանեց փաթեթն ու ասաց.

— Սուսա՛ն, առավոտվա հացն է, բաժանիր ուտենք:

Մենք բոլորս էլ շատ քաղցած էինք և չհրաժարվեցինք: Նույնիսկ շատ ուրախացանք: Սուսանը հացը հավասար բաժանեց բոլորիս և սկսեցինք ուտել:

Մեկ էլ տեսանք՝ Կարոն չի ուտում:

— Ա՛յ Կարո, դու ինչո՞ւ չես ուտում:

— Ես... ես...— կմկմաց Կարոն:— Ես քաղցած չեմ... Ես... իրավունք չունեմ:

Կարոյի տեսքը շատ խղճալի էր, և բոլորս հասկացանք, որ նա էր կերել Սերոբի հացը:

Հասկացանք, բայց էլի շատ խղճացինք Կարոյին: Գող Կարոյին ավելի շատ խղճացինք, քան քաղցած Սերոբին:

— Չէ՛, Կարո՛, պիտի ուտես:

— Չեմ ուտի, թող Սերոբն ուտի:

Ու չկերավ:

Առավոտյան, մահճակալը հավաքելիս Սերոբը իր բարձի տակ մի կտոր հաց գտավ: Հասկացավ, որ Կարոն է դրել: Կարոյի բաժինն էր: Կարոն չէր կերել: Ինքն էլ չկերավ:

Երբ Դոնարա մորաքույրը իր հեքիաթը վերջացրեց, Սուրիկն ու Լյովիկը զգացին, որ շատ քաղցած են:

Լյովիկը չհամբերեց, ասաց.

— Մամա՛, ճաշել եմ ուզում:

Դոնարա մորաքույրն ասաց.

— Դուք այսօր չեք ճաշելու:

— Վաղն էլ չենք ճաշելո՞ւ,— հարցրեց Սուրիկը:

— Չէ՛,— ասաց Դոնարա մորաքույրը.— վաղն էլ, մյուս օրն էլ, էն մյուս օրն էլ՝ չենք ճաշելու:

Այդ երեկո մայրիկը Սուրիկին ու Լյովիկին ընթրիք չտվեց: Մի-մի փոքրիկ կտոր հաց դրեց նրանց առջև: Լյովիկը շուտ կերավ, վերջացրեց, Սուրիկը կեսը կերավ, կեսը դրեց բարձի տակ:



«Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերի 1968 թ. գրական լավագույն ստեղծագործության մրցանակը շնորհվեց գրող ԽԱՉԻԿ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻՆ՝ «Ամենալավ գործը», Բադիկները» և «Հյուրասեր շղիկը» բանաստեղծությունների համար:



«Փոքրիկ Մեսրոպը», «Հերետիկոսի թիկնոցը», «Գայլը և նրա ընկերները» ստեղծագործությունների նկարազարդման համար նկարիչ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԸ արժանացավ 1968 թվականի լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին:

# ԳՈՂ ԿԱՏՈՒՆ

ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Խիստ զայրացած
Բախտից իր չար,
Նստած մենակ
Պատի տակ,
Միտք էր անում
Ու մռմռում
Մի սև կատու
Քթի տակ։

—Գիշերն անքուն,
Ցերեկն անտուն,
Թափառում եմ
Ու լալիս.
Այս չար պոչից,
Երկար պոչից
Միշտ փորձանք է
Ինձ գալիս։

Ուր գնում եմ,
Ճանաչում են
Ու կանչում են.
—Բռնեցե՛ք.
Ճերմակապոչ
Գող կատուն է,
Դուռ, լուսամուտ
Փակեցե՛ք։





Երկար խորհեց,
Ջափեց-կտրեց
Ու որոշեց
Մեր կատուն
Ճերմակ պոչը
Սևով ներկել
Ու վազ տվեց
Ներկատուն։

Բայց չգիտեր,
Ներկը թաք էր,





Մեկ էլ զգաց
Մի սուր ցավ,
Լեղապատառ
Ու դողահար
Ներկատնից
Դուրս փախավ։

Այդ օրվանից
Դարձավ վայրի
Ճերմակապոչ
Գող կատուն,
Թափառում է
Հալածական,
Ո՛չ քուն ՝ունի
Ու ո՛չ տուն։

Նկ. ՄԿՐՏԻՉ ԳԻՋԳԻՋՅԱՆԻ

# ՍՊԻՏԱԿ ՔՐԻԶԱՆԹԵՄՆԵՐԸ

*(Ամերիկյան հնդիկների լեգենդներից)*

Վաղուց, շատ վաղուց, երբ դեռ ռազմի թմբուկները չէին թնդացել հնդկացիների երկրում, պրերիայի[1] եզրին մի գեղեցիկ գյուղակ կար: Տղամարդիկ որսի էին դուրս գալիս ամեն առավոտ և երեկոյան հարուստ պաշարով տուն էին վերադառնում, կանայք ուտելիք էին պատրաստում, կար անում, իսկ երեխաները խաղում էին արևածագից մինչև արևամուտ: Բոլորն էլ երջանիկ էին և համերաշխ:

Ցերեկները երկար ժամանակ արևը փայլում էր և ժպտում կարմրամորթ մարդկանց, անձրևը թափվում էր միայն այն ժամանակ, երբ պետք էր նորոգել ձորերի, գետերի, լճերի ջրերը և թարմացնել ծառերն ու ծաղիկները:

Այժմ լսեցեք, թե ինչ պատահեց:

Աստղերը, որ փայլում էին գյուղակի վրա, լսեցին հնդկացիների մասին և, որովհետև նրանց լույսը շատ էր աղոտ ու չէր հասնում Երկիր, խնդրեցին իրենց առաջնորդին, որ թույլ տա իրենց իջնել գյուղ:

Լուսինն էր գիշերային երկնքի առաջնորդը, նա չէր ուզում, որ իր աստղերը ամբողջ գիշերը թափառեն և Լուսաստղի նման անկողին մտնեն բոլորից ուշ, երբ արդեն առավոտ է: Երբ նման դեպք էր պատահում, նա ընդհարվում էր Արևի հետ: Բայց այդ գիշեր նա արտակարգ լավ տրամադրության մեջ էր և չմերժեց աստղերի խնդիրքը: Աստղերն աշխուժությամբ սկսեցին պատրաստվել ճանապարհորդության, այնպես էին ծիծաղում և շատախոսում, որ հազիվ թե լսեցին Լուսնի խելացի խորհուրդները:

— Դուք կարող եք գնալ ուր ուզում եք, բայց զգուշացեք, որ հանկարծ չշոշափեք գետինը: Եթե իջնեք գետնին, դուք այնտեղ կմնաք և հաջորդ օրը Արևը ձեզ կայրի, կսպանի, որովհետև նրա ճառագայթները ճակատագրական են մեզ համար:

Աստղերը գնացին երկար և հեռու: Նրանց բախտից էր, որ այդ գիշեր Լուսինը լրիվ էր, այլապես կկորցնեին ճանապարհը: Վերջապես հասան հնդկացիների գյուղակը և պտտվեցին նրա շուրջը: Հնդկացիները քնած էին, միայն մի փոքրիկ տղա, որ ապրում էր գյուղակի ծայրին, դեռ արթուն էր: Լսելով տարօրինակ շշնջոցներ իր գլխավերևում, նա լարեց ուշադրությունը և վիգվամի[2] տանիքի բացվածքից դուրս նայեց: Նրա սիրտն սկսեց բաբախել: Ինչքա՜ն շատ աստղեր կային և ինչքա՜ն մոտիկ էին դրանք: Նա մագլցեց վրանի կենտրոնի սյան վրա, բայց սյունը դեմ առավ ամենափոքրիկ և ամենահետաքրքիր աստղին ու ցած ընկավ: Աստղիկը շատ ներքևից էր անցնում և սյան հետ նա էլ ընկավ ցած: Ընկավ ցած և իսկույն դարձավ մի գեղեցիկ աղջիկ:

— Տե՛ս, թե ի՛նչ արիր,— լաց լինելով, տղային հանդիմանեց աղջիկը,— ես այլևս չեմ կարող վերադառնալ իմ քույրերի մոտ, և, հենց որ լույսը բացվի, Արևի նետերը կգտնեն ինձ ու ես կմեռնեմ:

Տղան ապշահար նայում էր նրան: Այդ միջոցին մյուս աստղերը արդեն հասկացել էին, թե ինչ է տեղի ունեցել և խուճապի մատնված ետ էին թռչում, գիտենալով, որ ոչնչով օգնել չեն կարող իրենց դժբախտ քրոջը:

Արցունքներ առատորեն հոսում էր սիրուն աղջկա աչքերից. տղան խղճահարվեց:



[1] Պրերիա—տափաստան՝ Հյուսիսային Ամերիկայում

[2] Վիգվամ—հյուղակ (հնդկացիների)



— Ես քեզ կօգնեմ,— ասաց նա,— ցերեկը, երբ Արևը ծագի, ես քեզ կթաքցնեմ իմ վիգվամում:

— Եթե կարողանամ ցերեկն ապահով անցկացնել երեկոյան կդառնամ ծաղիկ, կբարձրանամ մի բարձր ժայռի վրա և կապրեմ նրա կատարին: Այնտեղից կհսկեմ ձեզ և ձեր ժողովրդին, որովհետև ինձ դուր է գալիս ձեր կյանքը:

Այդպես էլ եղավ: Տղան ամբողջ օրը տանը մնաց և ամեն ինչ արեց, որ ամենահետաքրքրասեր ճառագայթն անգամ ներս չթափանցի: Հենց որ մութն ընկավ, աղջիկն իսկույն դուրս թռավ ծխնելույզի միջով և շտապեց տեղ գտնել բարձր ժայռի վրա, որի կատարին հենց հաջորդ օրը մի գեղեցիկ սպիտակ վարդ հայտնվեց:

Բոլոր հնդկացիները հիանում էին՝ հեռվից դիտելով գեղեցիկ ծաղիկը: Միայն տղային էր հայտնի, որ դա այն փոքրիկ աստղն էր, որին պատսպարել էր իր վիգվամում արևի սպանիչ ճառագայթներից փրկելու համար:

Շուտով աղջիկն իրեն սկսեց մենակ զգալ ժայռի կատարին: Թեև կարող էր դիտել ավանն ու մարդկանց առօրյան, բայց ոչ ոք չէր համարձակվում մագլցել զառիթափ ժայռի վրա՝ նրա հետ զրուցելու համար: Միայն թռչուններն էին երբեմն թռչում մոտակայքով ու խուսքի բռնվում:

Մի օր նրա հետ զրուցելու եկավ փոքրիկ ցախսարեկը:

— Ես շատ մենակ եմ այստեղ,— դանգատվեց սպիտակ վարդը,— և կարոտում եմ մարդկանց: Ինչ լա՛վ կլիներ, եթե կարողանայի ապրել պրերիայում:

— Ուզում ես պրերիայո՞ւմ ապրել,— ասաց թռչնակը:— Ես կօգնեմ քեզ: Հապա, մի փոքր թեքիր գլուխդ, այնպես, որ կարողանամ քեզ բռնել իմ կտուցով:

Վարդը հնազանդ թեքեց գլուխը, ցախսարեկը բռնեց նրան իր կտուցով և թռավ դեպի պրերիա:

Այնտեղ կյանքն ավելի ուրախ էր: Հնդկացիները, ինչպես և զանազան կենդանիներ, գալիս էին սպիտակ




ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Պարտեզի մեջ, իրենց բակում,
Նստած ծառի զով շվաքում,
Գիրք է կարդում Նունեն սիրով,
Տարվել է նա հեքիաթներով:
Տատն ասում է.
— Աղջի՛, Նունե,
Բա սոված չե՞ս, հաց կեր գոնե:—
Բայց հեքիաթը ո՞նց ընդհատի,
Չի էլ լսում ձայնը տատի:
Աչքի առաջ անտառն է մութ,
Այն աղջիկը՝ շորը պուտ-պուտ,
Որ եկել է մասուր տանի,
Մոլորվել է, բա ի՞նչ անի,
Ինչպե՞ս գտնի գյուղի ճամփան,
Մութն ընկնում է, այդպես էլ բա՛ն:
Ու մթան հետ, ահը սրտում,
Մորն է կանչում տխուր-տրտում,
Լալիս է նա հոնգուր-հոնգուր,



Ո՛չ օգնող կա, ո՛չ հաց ու ջուր:
Եվ այդ պահին, ակաս-մակաս,
Չար կախարդն էր ասես պակաս.
Ավելն հեծած՝
Իջավ նա ցած:
Եվ ի՛նչ կախարդ՝ պառավ մի կին,
Վիշապ օձի շապիկն հագին,
Մազը բիզ-բիզ,
Քիթը մի թիզ,
Մեջքի կուզը ասես մի լեռ,
Ատամները երկար ու կեռ,
Այտերը փոս,
Ունքերը կախ,
Ծնոտը ծուռ,
Ոտները կաղ:
Իջնելուն պես նա հռհռաց,
Ագռավի պես սուր կռկռաց,
Ասաց.— Ո՞վ է սրան բերել,
Վաղուց է, որ մարդ չեմ կերել,
Ափսոս, կուշտ եմ, թող դառնա քար
Հետո կանեմ պատառ-պատառ:—
Ասելուն պես աչքը չռեց,
Աչքի բոցով մի մազ վառեց,
Հետո ձեռքը պարզեց նա իր՝
Էլ ի՛նչ աղջիկ. հապա նայիր.
Տեղնուտեղը նա քար դարձավ,
Անտառի մեջ արձանացավ:
— Վա՛յ, խեղճ աղջիկ,— տխրեց Նունեն,—
Կախարդները բա խիղճ չունե՞ն:
Ա՛յ, թե կախարդ դառնայի ես,

*վարդին նորություններ հայտնելու: Բայց մի օր առավոտյան ուժեղ հռնդյուն լսվեց հեռվից:*

*— Շտապեցե՛ք, շտապեցե՛ք,— գոռում էին բոլորը,— բիզոնների հոտն է գալիս, պետք է թաքնվել:*

*Բոլորը վազեցին և թաքնվեցին, ինչպես կարող էին: Շուտով փոշու հսկայական ամպեր հայտնվեցին հորիզոնում, որոնք գնալով ավելի ու ավելի մեծացան: Սպիտակ վարդը չափազանց վախեցել և գլուխը թաքցրել էր տերևների մեջ, որոնք սարսափից լայնացել էին: Մրրիկի նման անցավ բիզոնների հոտը, հազարավոր սմբակներ որոտում էին ամպրոպի պես:*

*Եվ շրջապատը նորից խաղաղվեց, սպիտակ վարդը գաղտագողի դուրս նայեց տերևների արանքից: Պրերիան դարձել էր ամայի, և կենդանի շունչ անգամ չէր զգացվում:*

*— Ես չեմ մնա այստեղ, չեմ կարող դիմանալ այսքան փորձությունների,— ասաց նա ինքնիրեն,— ավելի լավ է ապրեմ լճի վրա:*

*Հաջորդ օրը, վաղ առավոտյան, երբ հնդկացիները անցնում էին լճի մոտով, զարմանքով նկատեցին, որ ջրի մակերևույթին սպիտակ ծաղիկներ կան:*

*— Գիշերային աստղերը ծաղիկներ են դրել այստեղ,— ասացին փոքրիկ երեխաները, բայց խելահաս մարդիկ օրորեցին գլուխները և ասացին, թե դա սպի-*



Նկ. ՄԿՐՏԻՉ ԳԻՋԳԻՋՅԱՆԻ

*տակ աստղն է, որ եկել է մարդկանց հետ ապրելու:*

*Այդ օրվանից աստղն ապրում է լճի վրա սպիտակ շուշանի տեսքով և հնդկացիները կոչում են նրան Վահրեգվանի կամ Սպիտակ ծաղիկ:*

*Անգլ. թարգմ. Լ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ*

Հենց այս պահին կօգնեի քեզ,
Կճչայի՝ վա՛ք-չի՛ք, վա՛ք-չի՛ք,
Կդառնայիր նորից աղջիկ,
Պառավի պես չար ու անբան,
Չէի անի ոչ մի վատ բան...—
Ասաց-չասաց,
Մեկ էլ հանկարծ
Խոսեց գիրքը հեքիաթների,
Ասաց.— Նունե՛, անտա՛ռ արի,
Դու կախարդ ես մի իսկական,
Արի փրկի՛ր խեղճ աղջկան,
Հետո շրջի՛ր դու ամեն տեղ,
Օգնի՛ր մարդկանց խեղճ ու անմեղ:
Դե, մի՛ նստիր, թև՛ առ, արի՛,
Դու կախարդ ես, կախարդ բարի:
Ա՛յ, ուզում ես,
Փորձի՛ր ու տես,
Դու գաղտնիքներ գիտես այնքան,
Գիտես լեզուն կախարդական:
Թե այդ լեզվով ասես-խոսես,
Կկատարվի ինչ-որ ուզես...—
Լսեց Նունեն բերանը բաց:
— Որ ասում է, փորձեմ,— ասաց:
Այդ էր՝ տեսավ մեծ եղբայրը,
Հանդում թողած արտն ու վարը,
Ծառի հովին
Թևը՝ թևին
Խռմփում է իրեն քեֆին:
Եղբայր որն է՝ ծույլ ու անբան
Ծանր մի բեռ ուսին իր տան:
Նունեն կանգնեց նրա դիմաց,



Ձեռքը պարզեց ու շշնջաց.
— Վա՛ք-չի՛ք,
Վա՛ք-չի՛ք,
Եղբա՛յր Քաջիկ,
Հունձ են անում հարս ու աղջիկ,
Իսկ դու ուժեղ, աշխատասեր,
Կեսօրն անց է, քնած ես դեռ:
Դե, շուտ վե՛ր կաց,
Եղբա՛յր Քաջիկ.
Վա՛ք-չի՛ք,
Վա՛ք-չի՛ք...—
Այդ ասելն էր՝ Քաջիկն հանկարծ
Տեղից թռավ ու կարմացած
Ասաց.— Մա՞րդ էլ հիմա քնի,
Հազար գործ կա, բա ո՞վ անի:—
Ու վազեվազ հենց նույն պահին
Ներկայացավ նախագահին.
— Չեմ հասկանում ես այս բանը,
Ինչո՞ւ եք ինձ թողել տանը,
Ասեք տեսնեմ ի՞նչս է պակաս,
Որ չեք ուզում նայել վրաս,
Մեծ ու փոքր իրեն արտում,
Իսկ ես ինչո՞ւ չեմ աշխատում...—
Ասելուն պես՝ էլ չսպասեց,
Ուղիղ դեպի արտը վազեց:
Լսողները ապշածի պես
Լուռ նայեցին իրար երես.
— Միանգամից ո՞նց է փոխվել,
Տեսնես հո չի՞ խելագարվել:—
Նունեն անչափ ուրախացավ,

Չէ՞ որ փոքր հաջող անցավ:
Ասաց.— Լավ է, դե, հիմա էլ
Այն աղջկան պիտի օգնել:—
Բայց մեկ էլ ինչ՝ տեսավ ճամփին
Իր դասընկեր Սոսի պապին՝
Պապին այն կույր,
Խեղճ ու տխուր,
Աչքերի տեղ խոր-խոր փոսեր,
Իսկ փոսերին՝ սև ակնոցներ...
Նրա համար ամեն ինչ սև.
Արևը՝ սև,
Տերևը՝ սև...
Քայլում էր նա լայն փողոցով
Ձեռնափայտի թխթխկոցով:
Նա չէր թողնում օգնեն իրեն,
Ձեռքից բռնած տանեն-բերեն,
Եվ ամեն օր
Ճամփով սովոր
Ելնում էր դուրս,
Գնում էր ներս,
Գնում էր ու թիկնում թախտին,
Դառնում կիսատ իր հեքիաթին:
Կամ պատմում էր կռվի դաշտից,
Զինվորական իր քաջ վաշտից,
Ընկերներից իր մարտական,
Որ հերոսի մահով ընկան...
Պատմում էր նա խիստ կայրացած՝
Ֆաշիստներից այն գազազած,
Որ մի գիշեր վերցրին գերի
Ու հանեցին լույսն աչքերի...
Լսում էին Սոսը, Նունեն
Ու մտածում, թե ի՞նչ անեն,
Ինչպե՞ս գտնեն դեղեր բուժիչ,
Որ գոնե նա տեսնի մի քիչ...
Բայց դե հիմա էլ դեղն ի՞նչ է,
Նունեն արդեն կախարդ է, չէ՞:
— Իմ լա՛վ պապի, դե, հիմա տե՛ս,
Մի վայրկյանում կբուժեմ քեզ,—
Ասաց Նունեն կապուտաչյն
Ու շշնջաց.— Վա՛ք-չի՛ք վա՛ք-չի՛ք:—
Հենց այդ էր հա,
Մեկ էլ ահա
Պապը կանգնեց ու վարմանքից
Ձեռնափայտը ընկավ ձեռքից,
Ասաց.— Վա՜յ թե երազ է սա,
Այս ի՞նչ եղավ,
Ինչպե՞ս տեսա:
Ախր ո՞վ ինձ
Աչքեր տվեց,
Չեմ հասկանում,
Զարմանք է մեծ:—
Տեսավ Նունեն, ուրախացավ,
Այս մի փորձն էլ հաջող անցավ,
Ասաց.— Ո՞ւր եմ այսպես նստել,
Այն աղջկան պիտի փրկել:—
Ու նա կրկին
Թեքվեց գրքին.
— Հեքիաթների գիրք իմ,— ասաց,—
Դե, գալիս եմ, դռներդ բաց:
Հիմա ճիշտ որ ես կախարդ եմ,
Չար պառավին պիտի հաղթեմ...—
Եվ արի տես,
Ասելուն պես



Ուսին իջան արծվի թևեր,
Թափ առավ նա ու թռավ վեր:
Անցավ սարեր,
Անցավ ծովեր,
Ու լույսի հետ առավոտի՝
Անտառ մտավ նա հեքիաթի:
Իսկույն գտավ քաջ աղջկան,
Խոսեց լեզվով կախարդական,
Ձայն տվեց նա.— Վա՛ք-չի՛ք, վա՛ք-չի՛ք,—
Ու քարն էլի դարձավ աղջիկ,
Նույն աղջիկը՝ տխուր-տրտում,
Չար պառավի ահը սրտում:
Նունեն ասաց.— Չվախենաս,
Ինձ հետ հիմա տուն կգնաս:—
Եվ նա գտավ ուռենու ճյուղ,
Գործեց իսկույն մի մեծ կամրջուղ,
Մասուր լցրեց բերնեբերան
Ու ժպտալով տվեց նրան,
Ասաց.— Ըհը՛, հետդ տուն տար,
Բայց էլ մենակ չգաս անտառ,
Թե չէ նորից
Կախարդը չար
Քեզ կդարձնի
Մի կտոր քար:—
Ասաց, հետո ուսին դրեց,
Մի վայրկյանում տուն հասցրեց:
Երբ աղջիկը մորը գտավ,
Նունեն նորից անտառ մտավ:
Գտավ իսկույն այն պառավին,
Այն կոկռան չար ագռավին,
Զարմանք կտրեց պառավը չար,
Ասաց.— Ո՞վ ես, ինչպե՞ս եկար,
Հավքն իր թևով,
Օձն իր պորտով,
Դեռ չեն անցել
Իմ տան մոտով:
— Վա՛ք-չի՛ք, վա՛ք-չի՛ք, ես Նունեն եմ,
Եկել եմ, որ հոգիդ առնեմ;
— Հա՜, հա՜, հա՜, հա՜,—
Նա հռհռաց,
Ագռավի պես
Չոր կռկռաց,
Ասաց.— Հիմա
Քեզ կմորթեմ,
Ոտով-գլխով հում-հում կուտեմ:—
Ու սուրն առավ, որ մոտենա,
Բայց հենց տեղում ծուխ դարձավ նա:
Երբ պառավը կորավ անդարձ,
Փոքրիկ Նունեն ուրախ ժպտաց
Եվ ինքն իրեն ասաց.— Նունե,
Այսօր արդեն բավական է,
Թեև գործեր դեռ շատ ունես,
Ոչինչ, այն էլ հետո կանես,—
Ասաց ու երբ շուրջը նայեց,
Իրենց բակն էր, պարտեզը մեծ,
Բարդիները երկար ու ձիգ,
Իսկ իր ձեռքում բացված մի գիրք...
Ու նա կրկին
Թեքվեց գրքին,
Տողին դրեց ցուցամատը,
Շարունակեց նույն հեքիաթը:

*Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ*




ԱՂԱՍԻ ԹՈՒՐԱՋՅԱՆ

Ես, իհարկե, չեմ հիշում, թե երբ եմ աշխարհ եկել։ Բայց զգում էի, որ կամ, գոյություն ունեմ։ Ես իհարկե մենակ չէի. մեր բնում փայլում էին ութ չարաճճի աչքեր։ Մի անգամ, երբ մայրս լսելով անծանոթի ոտնաձայն, հաչելով դուրս պրծավ բնից, ես էլ օրորվելով հետևեցի նրան, ճիշտ է, մի քանի անգամ գլորվեցի, բայց դրսում շատ լավ էր, ես ուզեցի նմանվել մայրիկիս։ Եկվորին նայելով, սկսեցի բերանս բացուխուփ անել։ Ես մոտեցա և թաթով սկսեցի քաշել եկվորի ոտքը, նուրբ գույպան իսկույն պատռվեց։ Անծանոթը ոտքը ետ քաշեց, այդ հաղթանակից սրտապնդված, նոր հարձակման էի պատրաստվում, երբ անծանոթը կռացավ և ինձ կտրեց գետնից։

Չնայած գաճաճների ցեղին է պատկանում, բայց չարաճճին է,— ինձ մի քանի անգամ շուռումուռ տալուց հետո, ասաց անծանոթը։

— Ի՞նչ ես կարծում, սա կարո՞ղ է արտիստ դառնալ,— նայելով տանտիրուհուն, ասաց նա։

— Քո ունեցած խելացի շնիկների մե՞ջ... ուղղակի ծիծաղելի է։

— Համենայն դեպս այս անկարգին նվիրիր ինձ։

— Եթե դուր է գալիս, խնդրեմ,— առանց առարկելու ասաց տանտիրուհին։

— Եկվորը պայուսակից մի լրագիր հանեց և ինձ փաթաթեց մեջը։

* * *

Նոր բնակարանում ես ինձ այնքան վատ չէի զգում։ Չնայած կաթը մատուցում էին տհաճ համ ունեցող ռետինե խողովակով, բայց ինքը՝ կաթը համեղ էր ու հաճելի։

Ես, իհարկե, չեմ բողոքում, բայց պետք է ասեմ, որ մենության մեջ էի։ Ոչ ոք չկար, որ զզվրռվեի։ Օրվա ընթացքում մի քանի անգամ տեսնում էի ինձ նոր բնակարան բերողին, որի անունը Աննա էր։ Աննան՝ իմ տերը, հաճախ կատակներ էր անում հետս, և չնայած իմ սուր ատամներին ու ճանկերին, հաղթողը միշտ ինքն էր լինում։ Այսպես անցան օրեր, անցավ նաև մանկությունս։ Երբ արդեն բավականին մեծ էի, ինձ տարան կրկեսի խաղասպարեզ։

Ես նստում էի ինձ հատկացված տեղում և դիտում, թե ինչ են անում մյուս շնիկները։ Բացի իմ ցեղակիցներից, մեզ հատկացված շրջանաձև խաղաշտում վազվզում էր նաև մի հսկա արջ։ Երբ նա շորորալով անցնում էր իմ կողքով, վախից ուղղակի փշաքաղվում էի։

Երբ ընկերներս թռչում էին օղակի միջով կամ պարանման շարժումներ էին անում, տերս նրանց բերանը ինչ-որ բան էր դնում։ Հետո իմացա, որ այդ փոքրիկ ուտելիքն իր համով ու հոտով անհամեմատելի մի քաղցրավենիք էր։



Ես անհամբեր սպասում էի մի որևէ հանձնարարության, որպեսզի ինքս էլ մյուսների նման համախակի ստանամ այդ քաղցրավենիքից։

Վերջապես, եկավ այդ օրը։ Այնքան հեշտ թվացող շարժումները ինձ համար անկարելի դարձան, մեծ դժվարությամբ վարժվեցի ամենահասարակ ձևին՝ կանգնել ետին ոտների վրա։ Այդ բանի համար, իհարկե, շատ տանջվեցի, երբ այն կատարեցի, ինչպես հարկն էր և նույնիսկ մի քանի քայլ ետ ու առաջ շարժվեցի, տերս իմ մռութը սեղմեց դեմքին և մի մեծ կոնֆետ նվիրեց ինձ, որը ես երկար ժամանակ ծամծմեցի, որովհետև ափսոսում էի անմիջապես կուլ տալ։ Անցան ամիսներ։ Ես հնարավորին չափ անում էի այն ամենը, ինչ պահանջում էր Աննան։

Աննան ինձ երբեք չէր ծեծում, բայց շատ խըստապահանջ էր, ես էլ շատ էի սիրում նրան, թռչում էի, օղում պտտվում, միայն թե տերս գոհ մնար, ժպտար։ Հանդիսատեսներն էլ էին ուրախանում, ծափահարում էին, երբ Աննան ժպտում էր։

Ես սովորեցի նաև հաչել այնքան, ինչքան տերս

ուզեր։ Ուշադրությամբ նայում էի նրա աչքերին, նա համաչափ սկսում էր բացուխուփ անել աչքերը, այնքան անգամ էլ հաչում էի։

— Մինչև տասի սահմաններում հանում կամ գումարում առաջարկեք,— դիմում էր Աննան հանդիսականներին։— Դահլիճից լսվում էր՝ «3-ին գումարած 4», Աննան անմիջապես նայում էր ինձ և սկսում շեշտակի կկոցել աչքերը։ «5-ից հանած 4», տիրոջս աչքերը հրաշալի գումարում ու հանում գիտեին։ Հրճվանքի բացականչություններից ու ծափերից թնդում էր կրկեսի գմբեթը։

Մի անգամ տերս ինձ հանեց վանդակից, շոյեց և, մի ամբողջ կոնֆետ նվիրելուց հետո, դրեց արջի մոտ։ Ինձ թվաց, թե նա շփոթվել է, չէ՞ որ արջը կարող էր ինձ պատառ-պատառ անել։ Ես մի քանի անգամ հաչեցի։ Իհարկե դա վախի հաչ էր, նա սեղմվել էր մի անկյուն և զարմանքով նայում էր ինձ։ Դե, մենք քիչումիչ ծանոթներ էինք խաղասպարեզից, տեսել էինք իրար։ Նա միայն մրթմրթում էր և գլուխն էր տարուբերում, երևի մտածում էր, թե՝ սա ինչ անշնորհք հյուր է, եկել է իմ տունը և բարկանում է վրաս։ Իսկապես, ես հետո զգացի, որովհետև իմ արարքը մի բանի նման չէր։

Այդ օրվանից մենք սկսեցինք ապրել մի վանդակում, ուտում-խմում էինք միասին, գիշերներն էլ հպվում էի նրան ու քնում։ Երբ մենք՝ կատակում էինք, նա պառկում էր մեջքի վրա և թույլ տալիս, որ ես ինչ ուզեմ անեմ։ Մեկ շաբաթ անց, հանդիսականները տեսնում էին անհավատալի մի տեսարան՝ արջի թաթի տակ մի շնիկ։ Ծուռթաթը գլուխկոնծիներ էր տալիս, բոլորը «վա՜յ» էին գոռում, կարծելով, թե ես կճզմվեմ այդ անտաշի թևի տակ։



Աննան ստիպում էր արջին պառկել այն թաթի վրա, որի տակ ես էի։ Նա հավատացած էր արջի հավատարմությանը։ Ամեն շարժումից հետո ընկերս բաց էր թողնում ինձ, երևի ստուգելու համար՝ կենդանի՞ եմ, թե՞ ոչ։ Ես մի քանի ակրոբատիկ շարժումներ կատարելուց հետո, թռչում էի իմ հավատա-



րիմ ընկերոջ գիրկը և ծափահարությունների տարափի տակ, դուրս գալիս ասպարեզից։ Վարագույրից այն կողմ մենք ստանում էինք մեր նվերը՝ մի կոնֆետ և մի շիշ կաթ։

Մի օր էլ իմ ընկերը ամբողջ գիշերը տնքալուց հետո, առավոտյան չխմեց իր բաժին կաթը։ Այն ժամանակ սպիտակ խալաթավորներ եկան և դուրս տարան նրան։ Հեռվից լսեցի նրա անհանգիստ մրթմրթոցը, որին ես նույնպես ձայնակցեցի մի երկար ոռնոցով։ Հետո ականջներս հնարավորության չափ սրեցի նորից նրան լսելու համար, բայց...



Մեկ ամիս շարունակ ասպարեզ դուրս չեկա, անընդհատ քնում էի, այդպես լավ էր, երազով նրա մոտ էի լինում, իմ անփոխարինելի ընկերոջ մոտ...

Շուտով ինձ նոր դեր հանձնարարվեց։ Տերս նոր դերիս վրա երկար ժամանակ չկորցրեց։

Ես սատկած էի ձևանում։ Ծաղրածուն ինձ բարշ տալով, ասպարեզ էր տանում, ինչ անում էին, չէի վեր կենում, մինչև չլսեի միլիցիոների սուլիչի ձայնը։ Ես գոհ էի իմ նոր դերից։ Բայց տերս ըսկսեց պահանջել, որ սուլիչից հետո մի քանի անգամ օդում թռիչքներ կատարեմ... Ես չհնազանդվեցի։ Իհարկե, ոչ թե ես, այլ ոտքերս չէին հնազանդվում։ Ուզում էի թռչել առաջվա նման, բայց ծնկներս ծալվում էին։

Մի անգամ էլ թռչելիս ընկա կողքի վրա, հանդիսականները, տեսնելով իմ անճարակությունը, հռհռացին։ Ներկայացումից հետո տերս մոտեցավ ինձ։ Ես պառկած էի։ Լսելով նրա ոտնաձայները, ծուլորեն ոտքի ելա։ Նա մոտեցավ, գրկեց ինձ և իր նուրբ թաշկինակով սրբեց աչքերս, որոնք երևի թրջված էին...

*— Ինչո՞ւ այսքան շուտ ծերացար, իմ խեղճի՛կ շնիկ,— ասաց նա և մի քանի անգամ համբուրեց իմ թաց դունչը: Ես էլ հասցրի լիզել նրա կնճռոտված երեսը, որը մի ժամանակ վարդագույն էր:*

*Այդ երեկո Աննան ինձ տարավ իր բարեկամներից մեկի տունը: Նա այնտեղ ասաց, որ այսպիսի խելոք շնիկ երբեք չի ունեցել: Իսկ հրաժեշտի պահին սրբելով աչքերի արցունքը, ավելացրեց.*

*— Մեր կոլեկտիվը երեք օրից հետո մեկնում է այս քաղաքից, ես որոշել եմ շնիկին նվիրել ձեզ: Նա այնքան էլ ծեր չէ, երբեմն կկարողանա զվարճացնել ձեզ: Բայց խնդրում եմ շատ չչարչարեք,— դառնալով տան ամենափոքրիկին ավելացրեց նա:— Այս շնիկը շատ է սիրում սուտ սատկած ձևանալ:*

*— Մորաքու՛յր, մորաքու՛յր, ուրեմն սա ի՞մն է: Իսկ չի՞ կծի:*

*Աննան ժպտաց:*

*Մեծերը շնորհակալություն հայտնեցին տիրոջս՝ լավ նվերի համար:*

*Վաչիկը իսկապես բարի երեխա էր: Նա միայն առավոտյան էր ինձ գործի դնում, ես պարտավոր էի գտնել նրա կոշիկները, որոնք հանելիս, դիտավորյալ պահում էր որևէ լաթի տակ: Իսկ տանը պարապելիս, հրամայում էր գնալ և սատկել, դեռ նա խոսքը չավարտած, ես դանդաղ քայլերով մոտենում էի դռան անկյունում ընկած լաթին և մեկնվում վրան: Այդպես շատ լավ էր, ես գոհ էի. չէ՞ որ փակ աչքերով տեսնում էի իմ հավատարիմ ընկերոջը, հիշում իմ ամբողջ անցյալը և մեկ-մեկ վեր թռչում տեղից...*

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



# ՀԵՔԻԱԹ, ՈՐԸ ՀԱՐԿԱՎՈՐ Է ՀԻՇԵԼ

(Ամխարական հեքիաթ: Եթովպիա)

Ժամանակով ապրում էին երկու եղբայր: Նրանք այնպես էին իրար սիրում, որ առանց մեկը մյուսի չէին կարողանում նույնիսկ մի օր ապրել: Դրա համար էլ նրանք միասին իրենց համար մի տուն կառուցեցին, որպեսզի երբեք չբաժանվեն իրարից: Հետո մի էշ էլ գնեցին և միասին զբաղվեցին առևտրով:

Համեստ եկամուտը նրանք կիսում էին հավասար, և թշնամությունը երբեք մուտք չէր գործում նրանց խրճիթը:



Բայց պատահեց այնպես, որ փոքր եղբայրը գետնի տակից գանձ գտավ:

Գանձը գտավ, իսկ գլուխը կորցրեց:

«Բոլորը ինձ կվերցնեմ,— մտածեց փոքր եղբայրը,— ես գտա՝ նշանակում է բոլորն իմն է: Մեծ եղբորս ոչինչ չեմ տա»:

Նա իր համար նոր տուն կառուցեց և սկսեց առանձին ապրել: Իր աղքատ եղբորը նա այլևս չուզեց ճանաչել: Նա այն աստիճան ժլատ ու ագահ դարձավ, որ բորբոսնած բլիթն անգամ դեն չէր նետում:

Մի օր էլ եկավ աղքատ եղբոր մոտ ու ասաց.

— Ես ուզում եմ քանդել մեր հին տունը և իմ բաժինը վերցնել՝ տնտեսության մեջ ինձ պետք կգա: Էշն էլ ուզում եմ մորթել և վերցնել կեսը: Չնայած նիհար է, բայց շներիս կեր կլինի:

Աղքատն ընկավ իր հարուստ եղբոր ոտքերը:

— Ինձ մի՛ կործանիր,— խնդրեց նա,— այդ



բանը մի՛ անի: Թող ինձ մնա այս տունը և էշը:

Բայց հարուստ եղբայրը ասաց.

— Ո՛չ, չեմ թողնի: Ես ուզում եմ ստանալ այն, ինչ ինձ է պատկանում:

Այդ ժամանակ աղքատն ասաց.

— Ուզու՞մ ես, վճարեմ քո բաժին տան ու էշի գինը:

Բայց հարուստ եղբայրն ասաց.

— Ո՛չ, չեմ ուզում: Այն, ինչ պատկանում է ինձ՝ իմն է: Ես ուզում եմ իմ հասանելիքը վերցնել:

Աղքատ եղբայրն ասաց.

— Դա արդարացի չէ: Գնանք դատավորի մոտ, թող նա վճռի:

Նրանք գնացին դատավորի մոտ:

— Պարո՛ն,— ասաց եղբայրը,— լսի՛ր մեզ և արդա՛ր դատիր: Մենք երկու եղբայր ենք: Ապրում էինք աղքատության մեջ և ամեն ինչ կիսում հավասար: Մեր հարստությունը տունն էր ու էշը: Տունը մենք միասին, մեր ձեռքերով ենք շինել, էշը միասին, ընհանուր փողով գնել: Այժմ իմ եղբայրը հարստացել է: Նա իր համար նոր տուն է կառուցել, այնպիսին, որ նույնիսկ Նեգուսի համար ամոթ չէ ապրել այդ տանը: Նա այժմ հարյուրավոր անասուններ ունի, բայց ուզում է քանդել մեր հին տունը և վերցնել իր բաժինը, ուզում է մորթել մեր միակ էշը և նույնպես վերցնել իրեն հասանելիք կեսը: Ես խնդրեցի նրան ինձ թողնել տունն ու էշը: Բայց նա ասում է. «Ո՛չ, չեմ թողնի»: Ես ուզեցի վճարել նրան տան կեսի և էշի կեսի համար, բայց նա ասում է. «Ո՛չ, համաձայն չեմ»: Դրա համար էլ ես նրան քեզ մոտ բերեցի, որպեսզի դու վճռես այս գործը: Թող արդարությու՛նը առաջնորդի քեզ:

Դատավորը լսեց աղքատին և դարձավ հարուստի կողմը.

— Դու՞ այդ մասին ինչ կասես:

Հարուստն ասաց.

— Օ՜հ, իմ պարո՛ն, քո իմաստությանը վերջ չկա: Ասա՛ ինձ, արդյոք ամեն մարդ ազատ չէ՞ իր ունեցվածքի հետ վարվել այնպես, ինչպես կցանկանա: Չէ՞ որ ես չեմ խնդրում, որ եղբայրս ինձ տա այն, ինչը իրեն է պատկանում: Իսկ նա ոտնձգություն է անում այն բանի դեմ, ինչը ինձ է պատկանում: Մի՞թե դա արդարացի է:

— Դու ճիշտ ես: Ո՞չ ոք չի կարող խանգարել քեզ տնօրինելու քո ունեցվածքը: Դրա համար էլ գնա և արա ա՛յն, ինչ մտածել ես. քանդի՛ր ձեր տունը, մորթի՛ր էշը և թող ձեզանից յուրաքանչյուրը ստանա իր բաժինը: Դա արդարացի կլինի:

Իսկ աղքատին դատավորն ասաց.

— Դու չպետք է խանգարես նրան:

Եղբայրները գլուխ խոնարհեցին և գնացին: Աղքատը՝ սրտին մի մեծ կրակիծ, հարուստը՝ շատ ուրախացած:



Աղքատն ասաց.

— Դա անխոհեմ դատավորի վճիռ է:

Հարուստն ասաց.

— Ինչպես վճռեց դատավորը, այնպես էլ կլինի:

Ուստի նա մորթեց էշը և բաժանեց երկու հավասար մասի, իսկ հետո կանչեց իր ծառաներին և հրամայեց քանդել տունը:

Այդ միջոցին աղքատ եղբայրը իր մասից դուրս բերեց բոլոր իրերը և պատրաստվեց հրդեհելու տունը:

Հարուստը տեսավ այդ և ասաց.

— Դու չես համարձակվի հրդեհել տունը, որովհետև կարող է այրվել նաև իմ բաժինը:

Աղքատ եղբայրն ասաց.

— Ո՞վ կարող է խանգարել ինձ, իմ ունեցվածքի հետ վարվել այնպես ինչպես ես եմ ցանկանում: Ես ուզում եմ այրել իմ բաժին տունը և տեղը բակլա ցանել:

Այդ ժամանակ հարուստ եղբայրն ասաց.

— Դա իրավացի չէ: Գնանք դատավորի մոտ: Թող նա լուծի վեճը: Ինչպես որ նա ասի, այնպես էլ կլինի:

Նրանք նորից գնացին դատավորի մոտ:

Հարուստ եղբայրը գլուխ տվեց և սկսեց պատմել եղածը:

Դատավորը լսեց նրան և ասաց.

— Այն, ինչ ես ասացի անցյալ անգամ, նույնը կասեմ և հիմա: Յուրաքանչյուր ոք ազատ է իր ունեցվածքի հետ վարվել այնպես, ինչպես կցանկանա: Դու ազատ ես քանդելու տունը, որպեսզի վերցնես քո բաժինը, և դու չպետք է խանգարես նրան:

Հետո դատավորը դարձավ աղքատի կողմը և ասաց.

— Գնա և արա այն, ինչ մտածել ես:

Եղբայրները գնացին:

Հարուստն ասաց.

— Դա անխոհեմ դատավորի վճիռ է:

Իսկ աղքատն ասաց.

— Ինչպես վճռեց դատավորը, այնպես էլ կլինի:

Եվ նա հրդեհեց իր տան կեսը, իսկ իր բաժնի հետ այրվեց նաև մյուս կեսը՝ այն, որը պատկանում էր իր հարուստ եղբորը:

Հետո աղքատը փորփրեց հողը և բակլա ցանեց: Երբ բակլաները մեծացան, հարուստ եղբոր ողջ մարգերից պոկեց մի քանի պատիճ և կերավ:

Աղքատ եղբայրը բռնեց ողային, բերեց հոր մոտ և ասաց.

— Քո ողան իմ բակլաներից հինգ հատ կերել է: Տուր իմ բակլաները:

Հարուստը սկսեց խնդրել.

— Այդ բակլաների փոխարեն ես քեզ ուրիշները կտամ:

Բայց աղքատ եղբայրն ասաց.

— Ո՛չ, ես ուզում եմ իմ բակլաները:

Հարուստը ծնկաչոք ընկավ նրա առաջ և ասաց.

— Քո հինգ բակլաների համար ես կվճարեմ...

Բայց աղքատն ասաց.

— Ո՛չ, ինձ ոչինչ պետք չէ, ես իմ բակլաներն եմ ուզում:

Այդ ժամանակ հարուստ եղբայրը, արդարություն փնտրելու համար, նորից գնաց դատավորի մոտ:

Դատավորը լսեց նրան և ասաց.

— Ինչպիսին եղել է իմ վճիռը, այնպես էլ կմնա: Յուրաքանչյուր ոք ազատ է իր ունեցվածքի հետ վարվել այնպես, ինչպես կցանկանա: Եվ երբ քո եղբայրը ասում է. «Ես ուզում եմ, որ ինձ վերադարձնեն իմ բակլաները», ինչու՞ ես դու ստիպում նրան իր բակլաների փոխարեն վերցնելու քոնը: Հեռացի՛ր այստեղից և այլևս չգաս ինձ մոտ:

Եղբայրները վերադարձան տուն: Աղքատը՝ ուրախացած: Հարուստը՝ սրտին մի մեծ կսկիծ:

Հարուստն իր մոտ կանչեց գյուղի ամենածեր և ամենահարգարժան բնակիչներին և խնդրեց նրանց պաշտպան կանգնել իր ողային: Նա խոստացավ եղբորը տալ իր հարստության կեսը, միայն թե եղբոր սիրտը խիղճ ընկնի և կենդանի թողնի իր ողային:

Ծերունիները գնացին աղքատի մոտ:

Աղքատն ասաց.

— Իմ եղբայրը կսպաներ իմ ողային թեկուզ մի հատիկ բակլայի համար: Բայց իմ մտքովն էլ չի անցնում սպանել նրա ողային: Ես միայն ուզեցի խրատել իմ ագահ եղբորը:

Երեխան կենդանի մնաց, իսկ աղքատը հարստացավ:

Այդպես են պատմում:

Ով լսի այս պատմությունը, թող հիշի, եթե քարը նետում ես դեպի վեր՝ նա կընկնի քո գլխին, եթե աչք տնկես ուրիշի ունեցվածքին, կկորցնես քոնը, եթե չարություն անել կամենաս, դա սկզբից դժբախտություն կբերի ուրիշին, իսկ հետո ավելի մեծ դժբախտություն՝ քո անձին:

*Ռուսերենից թարգմ. ՌՈՒԲԵՆ ՌՈՒԲԻՆՅԱՆԻ*

*Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ*

# ԱՄԵՆ ՕՐ ՆՈՐ ՎԱՐԴԵՐ ԵՆ ԲԱՑՎՈՒՄ

(Զրույց)

ՄԱՐԳԱՐԻՏԱ ՅԱԽՈՆՏՈՎԱ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Քաղաքում արդեն գարուն էր։ Դրսում երգում էին թռչունները, քամուց խշխշում էին ծառերը։ Մեկը գրատախտակի մոտ պատասխանում էր դասը։ Ուսուցչուհին գոհ գլուխն էր շարժում։

Իսկ Գարիկը շատ էր ուզում քնել։ Կամ էլ զբոսնել, թավալվել խոտերի մեջ։ Միայն թե չլինեին այդ բարդ բառերը, առանց որոնց էլ կյանքը վատ չէր։

Գարնանային տաք արևի տակ Գարիկն աննկատելի քնեց։ Նրան թվաց, որ ինքը պառկած է ինչ-որ փափուկ և տաք տեղ։ Հորանջելով նա արթնացավ և նայեց կապույտ երկնքին, այսինքն՝ այդ բոլորը Գարիկը երազում էր տեսնում, իրականում ննջում էր իր նստարանին։

Հանկարծ կողքին ինչ-որ մեկն էլ հորանջեց և ասաց.

— Ողջո՛ւյն, դո՞ւ էլ մեզ մոտ եկար։

Գարիկը նայեց և տեսավ երկտարեցի Բաբկենին։

— Ի՞նչ է նշանակում՝ ձեզ մոտ,— հարցրեց Գարիկը։— Այդ ովքե՞ր եք դուք։

— Ծույլերը։ Իսկ սա մեր արգելավայրն է։ Այստեղ միայն արժանիները կարող են մտնել։

Գարիկը ուզեց էլի հարցեր տալ, բայց ինչ-որ փափուկ բան զգաց, որի վրա պառկած էր և անմիջապես շրջվեց։

— Վա՛յ,— բացականչեց Գարիկը,— այս ի՞նչ է։

— Նախ և առաջ՝ ոչ թե ի՞նչ է, այլ՝ ո՞վ է։ Իսկ երկրորդը բավական է վրաս պառկես։

Եվ ուժեղ հարվածից շուռ գալով՝ Գարիկը տեսավ, թե ինչպես իր տակից դուրս եկավ Վազգենը՝ իրենց շենքի շիկահեր գիրուկը, որ ո՛չ աշխատում էր, ո՛չ էլ սովորում։ Վազգենի մազերը գզգզված էին և փշերի նման չորս կողմը ցցված։ Վերնաշապիկն էլ անփութորեն հավաքվել էր մի կողմի վրա։ Նա իրեն չշտկեց, միայն մռայլ ասաց.

— Երանի մի բան լիներ ուտելու։

— Ըհը՛,— համաձայնեց Բաբկենը,— բայց ի՞նչ։

Վազգենը մտածեց, մտածեց ու ասաց.

— Խորոված։

— Ծույլերը խորոված չեն անում։

— Դե, ուրեմն տապակած հավ։

— Հավ էլ չեն տապակում։

— Լավ, գոնե մի կտոր հաց։

— Հաց էլ չեն թխում։

Տիրեց ճնշող լռություն։ Գարիկը նկատեց, որ իրենցից քիչ հեռու հոսում է մաքուր, հորդառատ մի գետակ։

— Եկեք ձուկ որսանք,— առաջարկեց նա։— Խարույկ կվառենք և ձուկ կխորովենք։

Բաբկենը և Վազգենը արհամարհանքով նայեցին նրան։

— Իրեն հարգող ծույլը նման դատարկ գործերով չի զբաղվի։

— Դե, եկեք մի բան խաղանք,— տխուր ձայնով ասաց Գարիկը։

— Ի՞նչ խաղանք,— կասկածանքով հարցրեց Վազգենը։

— Շախմատ կամ էլ նարդի։

— Ո՛չ մի խաղ,— նետեց Բաբկենը։— Ծույլերը դատարկ գործերով իրենց գլուխը չեն ծանրաբեռնում։

— Դե լավ, գոնե ֆուտբոլ։

— Այդ միայն հիմարները կարող են անտեղի վազել։ Իսկ մենք հիմար չենք, մենք ծույլ ենք։

— Իսկ ի՞նչ եք խաղում դուք,— բացականչեց Գարիկը։

ՆԱԶԱՐԵԹ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

* * *

Քամին լուսնի մանգաղով
Երկնի ամպերը քաղեց.
Կապույտ-կապույտ երեկոն
Աստղ աչքերով ծիծաղեց։
Որպես հոգնած մի հնձվոր
Քամին քնեց ձորակում
Ու իր մանգաղը մնաց
Կախված հեռու երկնքում։

* * *

Մշուշն իջել էր անտառ
Ու ծառերին փաթաթվել.
Արևի մի բարակ շող
Երկնքից ցած էր կախվել։
Մշուշն ուզեց, որ թաղի
Արեգակի շողն անձայն,
Շողը ժպտաց, ծիծաղեց,
Դարձավ փոքրիկ ծիածան։

— Ընդհանրապես մենք լուրջ մարդիկ ենք և գերադասում ենք միայն քնել: Բայց, իհարկե, կարելի է նաև զվարճանալ: Դրա համար մենք խաչմերուկ ենք գնում:

Գարիկը նայեց շուրջը: Շրջակայքում ոչ մի տուն չկար: Հարթ, փոշոտ տարածություն էր: Ի՞նչ խաչմերուկի մասին կարող է խոսք լինել: Բայց նա տեսավ մի խումբ տղաների՝ Բաքկենի ու Վազգենի նման գզգզված: Նրանք կանգնած էին մեկը մյուսին հենված և անընդհատ թքում էին գետնին:

— Լավ է, չէ՞,— հարցրեց Բաքկենը և անմիջապես բացատրեց Գարիկին,— թքել, ահա ծույլերի ամենահարմար զբաղմունքը:



— Բայց ինչո՞ւ է այդ տեղը կոչվում «խաչմերուկ»,— հետաքրքրվեց Գարիկը:

— Սովորաբար մարդիկ աշխատանքից հետո, ազատ ժամերին հավաքվում են փողոցների խաչմերուկներում: Իսկ մենք այստեղ փողոց չունենք: Հո ծույլերը փողոց չե՞ն կառուցելու: Դրա համար էլ այդ տեղը մենք պայմանականորեն անվանել ենք «խաչմերուկ»...

Բաքկենը շատ գոհ էր իր բացատրությունից: Բայց շիկահեր Վազգենը արհամարհական նայեց նրան:

— Եվ դու դեռ կարող ես այդքան խոսել, հետո էլ ծույլ ես կոչվում:

— Իսկ դուք, գոնե կինո ունե՞ք,— չհանգստացավ Գարիկը:

— Որտեղի՞ց...— տխուր ասաց Բաքկենը:— Լավ կլիներ, իհարկե, բայց ո՞վ ցույց կտա, այսինքն՝ տեղ էլ չկա: Եվ ընդհանրապես մենք առանց աշխատողների կորած ենք: Մեզ համար մենակ դժվար է, շա՜տ դըժվար:

Գարիկը նորից նայեց շուրջը: Շատ անհրապույր տեղ էր: Ո՛չ թուփ կար և ո՛չ էլ ծառ:

— Սա արգելանոց չէ, այլ ինչ-որ անապատ:

— Հը՛, իսկ ինչպիսի՞ն պետք է լիներ քո կարծիքով ծույլերի արգելանոցը:

— Բայց չէ՞ որ այստեղ ծառ կա, ահա գետափի կեչին,— պնդեց Գարիկը:

— Բայց նա գետի մյուս ափին է,— ճշտեց Բաքկենը,— իսկ այն ափը աշխատասերներինն է:

— Այո՛,— հանկարծ սթափվեց Վազգենը:— Իսկ ինչո՞ւ ես դու անընդհատ «դուք», «ձեզ մոտ» ասում: Մի՞թե դու նույնպիսի ծույլ չես, ինչպես մենք: Մի՞թե դու ինքդ մեզ մոտ չներխուժեցիր:

Գարիկը սարսափեց: Նա ուզում էր գոռալ՝ «Ո՛չ, ես այնպիսին չեմ, ինչպիսին դուք եք», բայց մեկը ուժեղ հարվածեց կողքին: Նա բաց արեց աչքերը՝ այս անգամ արդեն իսկականից:

— Արթնացիր, է՜յ, ծույլի մեկը,— ամբողջ ուժով նրան ցնցում էր կողքին նստած Գայանեն:

— Մի՛ ֆշշացնի: Ես ծույլ չեմ...

Ուսուցչուհին, չընդհատելով դասը, հանդիմանող հայացքով նայեց նրանց, ձեռքով հարվածեց սեղանին և շարունակեց պատմել.

— Պատկերացնո՞ւմ եք, երեխանե՛ր, դա շատ հետաքրքիր է. մարդիկ ինչպես փոխեցին մեր երկրագունդը: Պատկերացրեք, ո՛չ մի ջրմուղ, ո՛չ մի կամուրջ, ո՛չ մի մեքենա՝ նույնիսկ հասարակ սայլակ, ո՛չ շոգենավ և նույնիսկ նավակ չկար աշխարհում: Ուրեմն որքա՜ն աշխատանք է կատարվել այդ բոլորի համար: Հիմա այդ ամենը մեր հարստությունն է, մեր ժառանգությունը: Այն ամենը, ինչ տեսնում եք ձեր շուրջը, մարդն է ստեղծել:

— Բացի աստղերից,— ասաց Գայանեն:

— Այո՛, բացի աստղերից, բայց այս դեպքում էլ՝ ի՞նչ կիմանայինք մենք աստղերի մասին, եթե աստղագետները չբացահայտեին նրանց գաղտնիքները:

Այդ օրը երեկոյան Գարիկը սովորականից երկար նստեց դասերը պատրաստելու: Նույնիսկ ծնողները նկատեցին այդ և զարմացան:



Առավոտյան Գարիկը վաղ էր արթնացել: Նա հագնվեց, լվացվեց, վերցրեց պայուսակը և վազեց դեպի աստիճանները: Այստեղ նա հանդիպեց Վազգենին: Թափթփված վերնաշապիկով, գզգզված մազերով՝ նա աննպատակ նայում էր դեպի փողոց:

— Ո՞ւր ես շտապում այսքան վաղ,— հարցրեց նա Գարիկին:

— Դասի:

Զարմանքից Վազգենը նույնիսկ ուղղեց վերնաշապիկը:

— Տեսա՞ք: Ահա թե ինչ է նշանակում մի երեկո տանը նստել և դասերի վրա ճգնել: Դե լավ, ոչինչ, այսօր էլ կնստես: Իսկ վաղը կնվնվաս ձանձրույթից:

Եվ նա հաճույքով հենվեց պատին:

Գարիկը արագ-արագ հեռացավ: «Մի՞թե, իսկապես, կձանձրանամ»,— ահաբեկված մտածեց նա: Փողոցում նա հավասարվեց ծեր այգեպանին: Ամեն առավոտ, երբ Գարիկը դպրոց էր գնում, ծերունին արդեն աշխատում էր: Նա ջրում էր փողոցի վարդերը, նրանց հենարաններ ամրացնում, հեռացնում մոլախոտերը: Իսկ հաջորդ օրը կրկնում էր ամեն ինչ սկզբից: Գարիկը մոտեցավ նրան և հարցրեց.

— Պապի՛կ, մի՞թե ձանձրալի չէ՝ այդքան աշխատել...

Ծերունին ժպտաց:

— Մի՞թե չգիտես, երբ շատ ես ուզում մի բան անել, ապա չես էլ նկատում, թե ինչպես է անցնում ժամանակը:

— Բայց դուք ամեն օր նույն գործն եք կատարում,— պնդեց Գարիկը:

Ծերունին վիրավորանքից նույնիսկ կարմրեց.

— Ի՞նչ ես ասում, տղա՛ս, ինչպե՞ս թե միևնույն գործը: Չէ՞ որ ամեն օր նոր վարդեր են բացվում: Դա ինձ շատ է ուրախացնում, և աշխատում եմ, որպեսզի ամեն ինչ լավ լինի, ծաղկած վարդերը երկար ապրեն: Ահա տեսնո՞ւմ ես այս սպիտակ գեղեցկուհուն. սա հենց այսօր է բացվել: Մի՞թե սա նման է երեկվա բացվածներին:

Ծերունին նորից նայեց Գարիկին և, նկատելով նրա պայուսակը, ավելացրեց.

— Դե, շտապի՛ր, շտապի՛ր, տղա՛ս: Գնա՛, դասից չուշանաս: Աշխատանքից երբեք չվախենաս, հիշի՛ր. ամեն օր նոր վարդեր են բացվում:



Զբոսաշրջիկի նոթատետրից

# ԳՅՈԹԵԻ

## ԳՐՈՍԵՐ ՀԻՐՇԳԱՐԴԵՆ № 25



Մենք ակնածանքով ենք բարձրանում Մայնի Ֆրանկֆուրտ քաղաքի Գրոսեր Հիրշգարդեն փողոցի № 25 շենքի աստիճաններով: Գոթական ոճով կառուցված չորսհարկանի այս շենքը, որի մինչև կտուրն են մագլցել վայրի խաղողի բաղեղները, զգալիորեն տարբերվում է դեմն ու շուրջը եղած ժամանակակից ոճի միապաղաղ շենքերից:

Այստեղ է իր բեղմնավոր ըստեղծագործական կյանքն անցկացրել մեծ Գյոթեն, այս տանն է նա գրել իր հանճարեղ ըստեղծագործությունը՝ «Ֆաուստը»:

Ահա երաժշտական սենյակը, որտեղ տարածությունը խնայելու համար դաշնամուրը կանգնած վիճակում է դրված՝ պատն ի վեր: Այստեղ են նրան հուզել իր հայրենակից կոմպոզիտորներ Բեթհովենի ու Բախի, ավստրիացի Մոցարտի, Շուբերտի, Հայդնի ստեղծագործությունները:

Սենյակներից մեկում դրված է Գյոթեի մոր պահասեղանը, որը նա նվիրել է որդուն: Գյոթեն այդ պահասեղանի վրա է գրել իր «Ֆաուստը»: Նայում ես հասարակ այդ սեղանին ու մտածում, թե ինչ մտահղացումներ են առաջացել հանճարեղ գրողի մտքում այդ սեղանի առջև, ինչ պատկերներ են դյութել նրան, ինչ մտորումներ հուզել, պաշարել, գերել:

Ահա վենետիկյան մեծ հայելին, որ այն ժամանակները հարգի է եղել և հազվագյուտ: Խոշոր, սև մի լապտեր դրված է

# Հ Ա Յ Ր Ե Ն Ի Ք Ո Ւ Մ

սեղանի վրա: Դա Գյոթեի մոր ձեռքի լապտերն է: Այն ժամանակներում երեկոները ժամը 8-ից հետո կանանց չէր թույլատրվում փողոցում նկնալ: Գյոթեի մայրը քաղաքապետությունից երեկոները քաղաքում շրջելու արտոնություն ուներ և իրեն ուղեկցողի հետ գիշերները երթևեկել է այս լապտերով: Մի հատուկ սենյակում երկաթալարերի եռև. դարակների վրա. դրված են այն գրքերը. որոնք ընթերցել է Գյոթեն ու օգտվել դրանցից:

## ՕՎԿԻԱՆՈՍԻ ՀԱՏԱԿՈՒՄ

Զկարծեք. թե մենք սուզակ դարձանք ու իջանք օվկիանոսի հատակը. այն էլ Ֆրանկֆուրտում: Ֆրանկֆուրտի կենդանաբանական այգուն կից ցուցադրվում է ծովի հատակը՝ իր կենդանի բնակիչներով ու բուսականությամբ: Հըսկա պոմպերը այդ ակվարիումներին տարբեր ծովերի ջերմաստիճանի ջուր են մղում ու ապահովում այնտեղ եղած բույսերի ու կենդանիների բնականոն կյանքն ու աճը: Այդտեղ մենք ծովային կրիաներ տեսանք. որ հորթի մեծություն ունեին: Փետրավոր բազմագույն ձկներ կային: Երկգույն ձկներ կային. որ ողնաշարից վեր կարմիր էին. իսկ փորի մասում՝ կապույտ: Կատվի չափ ջրային կարիճներ էին շարժվում իրենց անճոռնի ոտքերով:

Անպատմելի երանգներ ունեին ծովի հատակի բույսերը՝ շատ նուրբ ցողուններով ու ճյուղերով: Նրանք այնքան փարթամ են ու խճողված. որ ընդչըրյա «ջունգլիներին» են նմանվում:

Էկզոտարիումի մուտքը սկըսվում է հսկա մի դահլիճով: Այդտեղ նստարաններ են շարված հաճախորդների համար. որոնց դիմաց մեր Սունդուկյանի անվան պետական թատրոնի վարագույրի մեծությամբ հսկա ապակի է դրված: Ապակուց այն կողմ, պինգվինների աշխարհն է՝ հեռավոր Անտարկտիդայից մի բեկոր: Պինգվինները սառույցների վրա նստոտում էին կամ մարդու շուրժումներին շատ նըման քայլում: Երբեմն նրանք նետվում էին ջուրն ու իրենցով հիացող այցելուներին գերազանց լողի օրինակներ ցույց տալիս:

## ԱՎՏՈԿԱՌՔԻՑ ՄԻՆՉԵՎ ԼԻՄՈՒԶԻՆ

Շտուտգարտում մի հետաքրքիր թանգարան կա: Դա նվիրված է ավտոմեքենաների ստեղծման ու զարգացման պատմությանը: Այնտեղ դուք կտեսնեք առաջին ավտոկառքը. որ ստեղծվել է 1886 թվականին և նրա զարգացող տեսակները մինչև ժամանակակից ամենաշքեղ. հարմարավետ մեքենաները:

Այդ թանգարանում միայն երեք նկար կա փակցված:

Այդ ֆոտոներից ձեզ են նայում գերմանական յուրահատուկ արտահայտությամբ Կառլ Բենցը. Գոթլիբ Դայմլերը և մի դեռատի. գեղեցիկ աղջիկ:

Ովքե՞ր են նրանք:

Առաջին երկուսը իրարից անջատ հղացել են բենզինի ներքին այրման շարժիչն ու իրականացրել այն: Նրանց ջանքերով 1885 թվականին ստեղծվել է մոտոցիկլը. իսկ 1886 թվականին՝ ավտոկառքը: Իսկ ո՞վ է դեռատի այդ աղջիկը. որի անունը Մերսեդես է:



Նկ. Ալ. Գրիգորյանի

Հետագայում. երբ Գերմանիայում զարգանում է ավտոարդյունաբերությունը. անհրաժեշտ էր ստեղծված պատկառելի ֆիրմային անուն դնել. դժվարանում են գրավիչ անուն ճարել: Բենցի գործարանի գլխավոր ինժեները մի սիրունատես աղջիկ է ունենում՝ Մերսեդես անունով: Բենցի անունը միացնում են Մերսեդեսին և ստացվում է ժամանակակից ավտոարդյունաբերության համաշխարհային հռչակ ունեցող կոնցեռնի անունը՝ Մերսեդես Բենց: Շատերն են այս մարկայի մեքենաներ տեսել:

Առաջին ավտոկառքին թանգարանում հետևում են ժամանակակից բոնիչ ղեկ ունեցող ավտո-կառքի 1894 թվականի նմուշը. առաջին հրշեջ մեքենան՝ 1892 թվականի. առաջին փակ մեքենան-օմնիբուսը՝ 1903 թվականի և այլ փոքրիկ ու սպորտային մեքենաներ:

*ԲԱԲԿԵՆ ՇԱՀՈՒՄՅԱՆ*

Լույս է տեսնում 1925 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 3 Մարտ 1969 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.:

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41. Հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96։*

ՎՖ 05372: Պատվեր՝ 111: Տպաքանակ՝ 60100: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 19/III. 1969 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.






Դուք բոլորդ էլ, անշուշտ, սիրում եք մուլտիպլիկացիոն կինոնկարներ դիտել: Իսկ գիտե՞ք արդյոք, թե ինչպես են դրանք ստեղծվում:

Դա շատ բարդ, մանրակրկիտ աշխատանք է, որը պահանջում է ոչ միայն նկարչական ընդունակություններ, այլև մեծ աշխատասիրություն և համբերատարություն:

Մուլտիպլիկացիոն կինոնկարը դիտվում է ընդամենը 7—15 րոպե, սակայն հաճախ դրա ստեղծման համար պահանջվում է մեկ տարվա լարված աշխատանք:



Առավելապես դժվար է մուլտիպլիկացիոն կինոնկար թողարկել մեզ մոտ՝ Երևանում: Չէ՞ որ Հայաստանում վերջին մուլտիպլիկացիոն կինոնկարը թողարկվել է ավելի քան քսան տարի առաջ: Եվ այժմ անհրաժեշտ է ամեն ինչ սկսել նորից. ձեռք բերել հասցոցներ, նոր սարքավորումներ և այլն:

Սկզբում, ինչպես և սովորական կինոնկարներում, գրվում է գրական սցենարը, հետո մշակվում է ռեժիսյորական սցենարը, իսկ այնուհետև կոմպոզիտորը գրում է երաժշտությունը:

Երբ պատրաստ են սցենարը և երաժշտությունը, սկսվում է կինոնկարի ստեղծման անմիջական աշխատանքը, որն արդեն բոլորովին նման չէ սովորական կինոնկարի ստեղծման աշխատանքին: Եթե սովորական կինոնկարում գործում և խոսում են մարդիկ՝ դերասանները, ապա մուլտիպլիկացիոն կինոնկարում և՛ հերոսները, և՛ նրանց միջավայրը՝ սենյակները, փողոցները, քաղաքները ու կենդանիները, բոլորը նկարներ են:



Այսպիսով, բեմադրող նկարիչը նկարում է նկարահանվող կինոնկարի գործող անձանց, կինոնկարի էսքիզները, որից հետո միայն նկարիչ-մուլտիպլիկատորնե-

# ԻՆՉՊԵՍ Է ՍՏԵՂԾՎՈՒՄ ՄՈՒԼՏԻՊԼԻԿԱՑԻՈՆ ԿԻՆՈՆԿԱՐԸ

րը սկսում են ամենահիմնական և ծանր աշխատանքը՝ շարժման հաղորդումը:

Որպեսզի շարժումը ստացվի անընդհատ, անհրաժեշտ է պահպանել կադրերի ընդունված հաճախականությունը (1 վայրկյանում 24 կադր):

Մեկ րոպեն 60 վայրկյան է: Ուստի մեկ րոպեանոց կինոնկարում 1440 կադր կա, իսկ մուլտիպլիկացիոն կինոնկարում՝ 1440 նկար: Տասը րոպեանոց մուլտիպլիկացիոն կինոնկար ստեղծելու համար հարկավոր է նկարել 14400 նկար:

Նկարիչ-մուլտիպլիկատորի հիմնական խնդիրներից մեկն է որոշել շարժման հիմնական փուլերը: Յուրաքանչյուր շարժման մեջ պետք է առանձնացնել հիմնական ելակետերը: Առաջին նկարում բերված է մի օրինակ, թե ինչպես է գնդակը դիպչում պատին և ընկնում հատակին: Այդ շարժման հիմնական փուլերն են՝ № 1—ելակետ, № 9—պատին դիպչելու պահը և № 13—գետնին դիպչելու պահը:

Վերցնենք մեկ ուրիշ, ավելի բարդ օրինակ՝ քայլելը (նկ. 2):

Նկարում քայլող պինվոր է պատկերված Հովհ. Թումանյանի «Մի կաթիլ մեղրը» մուլտիպլիկացիոն կինոնկարից, որը նկարահանում է «Հայֆիլմ» կինոստուդիան: № 1— պինվորը բարձրացրել է ձախ ոտքը, № 9—ոտքը դնում է գետնին, №17— բարձրացնում է աջ ոտքը, № 25—աջ ոտքը դնում է գետնին և № 33—նորից մարմնի ծանրությունը տեղափոխելով աջ ոտքի վրա, բարձրացնում է ձախը, և այլն:

Ուշադրություն դարձրեք ձեռքերի վրա՝ նրանք նույնպես շարժվում են ոտքերի շարժմանը համընթաց:

Երևի նկատեցիք, որ պինվորների համարները հաջորդաբար չեն շարունակվում: Նկարիչ-մուլտիպլիկատորը նկարել է այդ շարժման միայն հիմնական փուլերը, նախատեսելով, իհարկե, դրանց միջև եղած լրացուցիչ փուլերը, որը հետո նկարում են նկարիչները: Եվ որքան շատ են լինում լրացուցիչ փուլերը, այնքան ավելի դանդաղ ու սահուն է ստացվում շարժումը: Այսպիսով, նկարիչ մուլտիպլիկատորը նշանակելով առաջին նկարը № 1, իսկ երկրորդը՝ № 9, առաջադրել է նկարել այդ երկու փուլերի միջև լրացուցիչ յոթ փուլ ևս: Եվ այսպե՛ս շարունակ:

Եթե մուլտիպլիկացիոն կինոնկարը նկարահանեն միայն հիմնական փուլերով, ապա էկրանի վրա շարժումն այնքան արագ կստացվի, որ մենք ոչինչ չենք հասկանա:

Սկզբնական նկարները արվում են թափանցիկ թղթի վրա, որից հետո փոխադրվում են թափանցիկ ցելյուլոիդի վրա և հատուկ ներկերով գունավորվում:

Թափանցիկությունը անհրաժեշտ է, որպեսզի լուսարկվի գործող անձանց թատերաբեմը, դաշտը, անտառը, տնակը և այլն, որոնք նույնպես նկարված են:

Երբ այդ բոլոր աշխատանքները կատարված են, սկսվում է դրանց հաջորդական նկարահանումը կինոապարատի միջոցով:

Մուլտիպլիկացիոն կինոնկարի պահանջը տարեց-տարի մեծանում և խորանում է: Եթե առաջ նրանք ծիծաղելի մուլտեր էին միայն, ապա այժմ ֆիլմերում դրվում են լուրջ խնդիրներ: Ահա այդպիսի ֆիլմերից մեկն է «Մի կաթիլ մեղրը» մուլտիպլիկացիոն կինոնկարը, որը շուտով դուք կդիտեք էկրանների վրա:

ԷԼԵՈՆՈՐԱ ՄԱՆԴԱԼՅԱՆ



Նկ. 1



Նկ. 2



Սիրելի երեխաներ, ձեզ սպասում է մի հաճելի նորություն: Շուտով կինոթատրոնների էկրանների վրա դուք կդիտեք «Մի կաթիլ մեղրը» մուլտիպլիկացիոն կինոնկարը, որ նկարահանել է «Հայֆիլմ» կինոստուդիան:

Լուսավորվում է էկրանը... Մենք տեսնում ենք թումանյանական գեղատեսիլ բնաշխարհը իր ողջ գեղեցկությամբ՝ բարձրաբերձ լեռներ ու ձորեր, բլուրներ, թավուտ անտառներ:

Հանկարծ բլուրների ետևից դուրս է գալիս հովիվը՝ մահակն ուսին: Նա գալիս է դեպի մոտակա գյուղը մեղր առնելու... Շարունակությունը դուք արդեն գիտեք: Ֆիլմը դիտելիս կհամոզվեք, թե որքան բնական են նկար-հերոսները, որոնք թեև չեն խոսում, սակայն այնքան պարզ ու հասկանալի են կարգանում դեպքերը, որ խոսքի կարիքը անգամ չի զգացվում:





Սիրելի երեխաներ մեր ամսագրի այս համարի ներսում, դուք երևի արդեն կարդացիք մուլտիպլիկացիոն ֆիլմերի մասին և տեսաք, թե որքան բարդ և դժվարին աշխատանք է դա: Ահա այդ դժվարին աշխատանքը ձեզ համար կատարել է նկարիչների մի մեծ կոլեկտիվ նկարիչ-ռեժիսյոր Վալենտին Պոդպոմոգովի գլխավորությամբ:

